Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 18 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1947

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Մոսկվայի 800-ամյակի առթիվ
ԸՆԿԵՐ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ՈՂՋՈՒՅՆԸ . . . 3

Նյութեր զրույցների համար
ՍՈՎԵՏԱԿԱՆ ՏԱՆԿԻՍՏՆԵՐԻ ՕՐԸ . . . 8

Գյուղատնտեսական թեմաների շուրջը
Գ. ԱՂԱՋԱՆՅԱՆ.— *Ապագա բարձր բերքի կարևոր նախապայմանը* . 31

Զրույցներ Ստալինյան հնգամյակի մասին
ՏՈՒՐԲԻՆՆԵՐ ԳՅՈՒՂԱԿԱՆ ԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ . . . 45

Խմբագրության հասցեն.—*Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 33—86։*



# ԸՆԿԵՐ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ՈՂՋՈՒՅՆԸ

*Ողջույն Մոսկվային, մեր Հայրենիքի մայրաքաղաքին՝ նրա 800-ամյակի օրը։*

*Ամբողջ երկիրը այսօր տոնում է այդ նշանավոր օրը։ Նա այդ օրը տոնում է ո՛չ թե ձևականորեն, այլ սիրո և հարգանքի զգացմունքով, նկատի ունենալով Մոսկվայի մեծ ծառայությունները Հայրենիքի հանդեպ։*

*Մոսկվայի ծառայությունները ոչ միայն այն են, որ նա մեր Հայրենիքի պատմության ընթացքում նրան երեք անգամ ազատագրել է օտարերկրյա ճնշումից՝ մոնղոլական լծից, լեհ-լիտվական արշավանքից, ֆրանսիական ներխուժումից։ Մոսկվայի ծառայությունը ամենից առաջ այն է, որ նա դարձավ բաժան-բաժան Ռուսիայի՝ մեկ միասնական կառավարություն, միասնական ղեկավարություն ունեցող միասնական պետության մեջ միավորման հիմքը։ Աշխարհում ո՛չ մի եր-*

կիր չի կարող հույս ունենալ պահպանելու իր անկախությունը, տնտեսական ու կուլտուրական լուրջ աճում ձեռք բերելու, եթե նա չի կարողացել ազատագրվել ֆեոդալական մասնատվածությունից և իշխանների գժտություններից։ Միայն միասնական, կենտրոնացված պետության մեջ միավորված երկիրը կարող է կուլտուր-տնտեսական լուրջ աճման հնարավորության, իր անկախության հաստատման հնարավորության հույս ունենալ։ Մոսկվայի պատմական ծառայությունն այն է, որ նա եղել է և մնում է Ռուսիայում կենտրոնացված պետության ստեղծման հիմքը և նախաձեռնողը։

Բայց դրանով չեն սպառվում Մոսկվայի ծառայությունները Հայրենիքի հանդեպ։ Այն բանից հետո, երբ մեծ Լենինի կամքով Մոսկվան նորից հայտարարվեց մեր Հայրենիքի մայրաքաղաք, նա դարձավ նոր, սովետական դարաշրջանի դրոշակակիրը։

Մոսկվան այժմ հանդիսանում է ո՛չ միայն նոր, սովետական սոցիալ-տնտեսական կարգերի կառուցման ոգեշնչողը, որոնք կապիտալի տիրապետությունը փոխարինել են աշխատանքի տիրապետությամբ, և ժխտում



են մարդու շահագործումը մարդու կողմից։ Մոսկվան դրա հետ միասին հանդիսանում է կապիտալիստական ստրկությունից աշխատավոր մարդկության ազատագրական շարժման մունետիկը։

Մոսկվան այժմ հանդիսանում է ոչ միայն նոր, սովետական դեմոկրատիայի կառուցման ոգեշնչողը, դեմոկրատիա, որ ժխտում է քաղաքացիների, սեռի, ռասայի, ազգերի ամեն մի ուղղակի կամ անուղղակի անհավասարություն, և ապահովում է աշխատանքի իրավունքը և հավասար աշխատանքի համար հավասար աշխատավարձի իրավունքը։ Մոսկվան դրա հետ միասին հանդիսանում է աշխարհի բոլոր աշխատավոր մարդկանց, բոլոր ճնշված ռասաների ու ազգերի պայքարի դրոշը՝ պլուտոկրատիայի ու իմպերիալիզմի տիրապետությունից նրանց ազատագրման համար։ Տարակույս չկա, որ առանց այդպիսի քաղաքականության Մոսկվան չէր կարող դառնալ ժողովուրդների բարեկամության կազմակերպման և մեր բազմազգ պետության մեջ նրանց եղբայրական համագործակցության կենտրոնը։

Մոսկվան այժմ հանդիսանում է ո՛չ միայն

մայրաքաղաքի աշխատավորների նոր կենցաղի շինարարության նախաձեռնողը՝ զերծ միլիոնավոր ընչազուրկների և գործազուրկների աղքատությունից և թշվառությունից։ Մոսկվան դրա հետ միասին, այդ տեսակետից, օրինակ է հանդիսանում աշխարհի բոլոր մայրաքաղաքների համար։ Եվրոպական, ասիական և ամերիկյան երկրների մեծ մայրաքաղաքների ամենալուրջ խոցերից մեկը հանդիսանում է հետնախորշերի առկայությունը, որտեղ աղքատացած միլիոնավոր աշխատավորներ դատապարտված են թշվառության և դանդաղ, տանջալից մահվան։ Մոսկվայի ծառայությունն այն է, որ նա ամբողջովին վերացրել է այդ հետնախորշերը և աշխատավորներին հնարավորություն է տվել նկուղներից ու խրճիթներից փոխադրվելու բուրժուազիայի բնակարաններն ու տները և սովետական իշխանության կառուցած նոր բարեկարգ տները։

Վերջապես, Մոսկվայի ծառայությունն այն է, որ նա հանդիսանում է ժողովուրդների միջև կայուն խաղաղության և բարեկամության պայքարի մունետիկ, նոր պատերազմի հրձիգների դեմ պայքարի մունետիկ։ Իմպե-



րիալիստների համար պատերազմը ամենաշահավետ գործն է։ Զարմանալի չէ, որ իմպերիալիզմի գործակալները աշխատում են այս կամ այն կերպ նոր պատերազմ հրահրել։ Մոսկվայի ծառայությունն այն է, որ նա անդուլ կերպով մերկացնում է նոր պատերազմի հրձիգներին, և բոլոր խաղաղասեր ժողովուրդներին համախմբում խաղաղության դրոշի շուրջը։ Հայտնի է, որ խաղաղասեր ժողովուրդները հուսով են նայում Մոսկվայի վրա, որպես խաղաղասեր մեծ տերության մայրաքաղաքի և որպես խաղաղության հզոր հենարանի վրա։

Ահա թե ինչպիսի ծառայությունների համար այսօր մեր Հայրենիքը այնպիսի սեր ու հարգանք տածելով իր մայրաքաղաքին՝ տոնում է Մոսկվայի 800-ամյակը։

Կեցցե՛ մեր հզոր, հարազատ, սովետական, սոցիալիստական Մոսկվան։

**Ի. ՍՏԱԼԻՆ**

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՏԱՆԿԻՍՏՆԵՐԻ ՕՐԸ

Սովետական ժողովրդի մղած Հայրենական Մեծ պատերազմի բոլոր ճակատներում—արևմուտքում հիտլերյան Գերմանիայի և արևելքում իմպերիալիստական Ճապոնիայի դեմ մղած մարտերում մեր փառապանծ տանկիստները, սովետական զորքի այլ տեսակների՝ քաջարի հետևակայինների, հրետանավորների, հեծելազորայինների և ստալինյան ավիացիայի հետ սերտ փոխգործողությամբ, պատվով կատարեցին Հայրենիքի պաշտպանության իրենց սրբազան պարտքը, փայլուն էջեր գրեցին սոցիալիզմի երկրի զինված ուժերի տարած մեծագույն հաղթանակի մեջ։

Սովետական տանկիստներն իրենց ահեղ մեքենաներով Հայրենական պատերազմի ընթացքում միշտ և ամենուրեք եղել են սովետական Հայրենիքի պաշտպանների առաջին շարքերում, վճռական դեր խաղալով



գերմանական ֆաշիզմի ու ճապոնական իմպերիալիզմի դեմ տարած մեր փայլուն հաղթանակի գործում։ Չի եղել քիչ թե շատ կարևոր ոչ մի ռազմական օպերացիա, որին ամենաակտիվ կերպով մասնակցած չլինեն մեր քաջարի տանկիստները։ Սովետական տանկերը համարձակորեն թափանցում էին հակառակորդի պաշտպանության խորքերը, ավերում նրա կոմունիկացիաներն ու խախտում կապը, ջախջախում և ոչնչացնում թշնամու ռեզերվները, խոր ռեյդերի միջոցով շրջապատում հակառակորդի զորամասերն ու միավորումները և այլ զորքի մյուս տեսակների հետ միասին կործանիչ հարվածներ հասցնում նրանց։

Սովետական տանկերը մեծ հաջողությամբ գործում էին բազմապիսի ռազմաբեմերում—նրանց համար չկար ոչ մի արգելք, նրանք կտրում անցնում էին անանցանելի թվացող ջրային բնագծերն ու անտառները, մագլցում էին զառիվեր լեռներով։ Սովետական տանկերը մարտերով անցան Կարպատյան լեռները, Մեծ Խինգանի լեռնաշղթան՝ Մանջուրիայում, որոնք անանցանելի էին համարվում նույնիսկ հետևակի համար։

Սովետական տանկիստները ծանր փորձու-

թյուններ ապրեցին Հայրենական պատերազմի ռազմադաշտերում, բայց բոլոր դժվարություններից դուրս եկան հաղթությամբ։

«Հայրենական Մեծ պատերազմի տարիներին Սովետական Բանակի զրահատանկային ու մեխանիզացված զորքերն աչքի ընկնող դեր խաղացին ֆաշիստական Գերմանիայի և իմպերիալիստական Ճապոնիայի ջախջախման գործում։ Ճակատամարտերի դաշտերում սովետական տանկիստները ցույց տվին անօրինակ արիություն և պատվով կատարեցին իրենց պարտքը Հայրենիքի հանդեպ» (Ստալին)։

Ահա թե ինչու սովետական ժողովուրդը հպարտանում է իր զրահատանկային զորամասերով, անսահման սիրում և մեծարում է տանկիստներին—Հայրենիքի քաջարի ու խիզախ պաշտպաններին։

Հաշվի առնելով զրահատանկային ու մեխանիզացված զորամասերի հատուկ կարևոր նշանակությունը և նրանց աչքի ընկնող ծառայությունները Հայրենական Մեծ պատերազմում, ինչպես նաև տանկաշինարարների ծառայությունները մեր Հայրենիքի զինված ուժերին զրահատանկային տեխնիկայով զինելու գործում, ՍՍՌՄ Գերագույն



Սովետի Նախագահությունն անցյալ տարի հատուկ Հրամանագրով սահմանեց ամեն տարի նշվող տոն—Տանկիստի Օրը, որ տոնվելու է սեպտեմբերի երկրորդ կիրակի օրը։

***

Տանկը համեմատաբար ամենաերիտասարդն է ժամանակակից սպառազինության մյուս տեսակների մեջ։ Առաջին անգամ տանկեր գործադրվեցին առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմի ժամանակ, անգլիացիների կողմից, 1916 թվականին։ Դրանք ամբողջապես մետաղյա անխոցելի փակ մեքենաներ էին, որոնք իրենց թրթուրներով կտրատում էին լարափակոցները, և միևնույն ժամանակ ունեին որոշ սպառազինություն։

Պետք է նշել, որ այն ժամանակ, երբ անգլիացիները նախագծում էին տանկի կառուցումը, նույնպիսի միտք հղացել էր նաև մեզ մոտ, Ռուսաստանում։ Ռուսական բանակի ենթասպա, Ձլատոուստի գործարանի նախկին վարպետ Պավել Սաբուրովն առաջարկել էր պատրաստել «բոլոր կողմերից փակ երկաթյա ինքնաշարժ մեքենա, որը զինված լինի հրանոթներով ու գնդացիրնե-

րովծ։ Սակայն ցարական բանակի հրամա-
նատարությունն անուշադիր թողեց այդ ա-
ռաջարկը, և Ռուսաստանում տանկեր չկա-
ռուցվեցին։ Եվ դա հասկանալի է։ Տեխնիկա-
տնտեսական տեսակետից հետամնաց այն-
պիսի մի երկիր, ինչպիսին ցարական Ռուս-
աստանն էր, ի վիճակի չէր ստեղծելու տան-
կային արդյունաբերություն և իր բանակը
զինելու զենքի այդ նորագույն տեսակով։

Տանկը բարդ մեքենա է։ Այն պատրաստե-
լու համար հարկավոր է նախ՝ հսկայական
քանակությամբ բարձրորակ պողպատ։ Այդ
քանակության մասին պատկերացում կազ-
մելու համար բավական է միայն ասել, որ
տանկի միջին քաշը կազմում է 30-40 տոն-
նա։ Իսկ այդպիսի քանակությամբ, և այն էլ
բարձրորակ մետաղ արտադրելու համար
պետք է ունենալ խիստ զարգացած մետաղա-
ձուլական արդյունաբերություն։

Այնուհետև, այդպիսի ծանր քաշ ունեցող
հսկայական մեքենան շարժման մեջ կարող
է դրվել միայն հզոր մոտորի ուժով, որն
արտադրելու համար պահանջվում է զար-
գացած մոտորաշինական արդյունաբերու-
թյուն։ Վերջապես, այդպիսի բարդ մեքենա
արտադրելու և գործի դնելու համար հարկա-



վոր են այն նախագծողների, կառուցողների
ու վարողների տեխնիկապես զարգացած
որակյալ կադրեր։

Այս բոլորը ստեղծել կարելի էր միայն
սոցիալիստական ինդուստրիայի զարգաց-
ման հիման վրա։ Ահա թե ինչու Սոցիալիս-
տական պետության հիմնադիրներ Լենինը և
Ստալինը, բոլշևիկյան պարտիան, սովետա-
կան ժողովրդին տարան սոցիալիստական ին-
դուստրիալիզացիայի ուղիով, մեր Հայրենիքի
ռազմա-տնտեսական հզորությունն ամրա-
պնդելու համար։ Սովետական զինված ուժե-
րի մեծ կազմակերպիչներ Լենինը և Ստալինը
Սոցիալիստական պետության ստեղծման
հենց առաջին օրերից, Կարմիր Բանակի սպա-
ռազինության այլ տեսակների ուժեղացման
հետ միասին, հսկայական ուշադրություն
նվիրեցին նրա զրահատանկային սպառազի-
նության ստեղծմանն ու հզորացմանը։ Բայց
այդ հնարավորությունները սահմանափակ
էին, քանի դեռ մեզ մոտ չկար զարգացած
ծանր արդյունաբերություն։

Մեծ Ստալինի ղեկավարությամբ սովետա-
կան ժողովուրդն իրագործեց երկրի սոցիա-
լիստական ինդուստրիալիզացիան։ Ստալին-
յան հնգամյակներն ամուր հիմք ստեղծեցին

Կարմիր Բանակը ժամանակակից մարտական տեխնիկայով զինելու, հզոր տանկային արդյունաբերություն ստեղծելու համար։ Գյուղատնտեսության կոլեկտիվացման և նրա մեխանիզացիայի շնորհիվ ստեղծվեցին տրակտորիստների, մեքենավարների, շոֆերների մեծաթիվ կադրեր, որոնք հզոր ռեզերվ դարձան տանկային զորքերի համար։

* * *

Սովետական զրահատանկային և մեխանիզացված զորքերի, սովետական տանկային արդյունաբերության ծնունդն ու ամրապնդումը սերտորեն կապված են ընկեր Ստալինի անվան հետ։ Ընկեր Ստալինի անմիջական ղեկավարությամբ մեր երիտասարդ տանկային արդյունաբերությունը չտեսնված կարճ ժամանակամիջոցում փայլուն հաջողություններ ձեռք բերեց։ Ընկեր Ստալինն անձամբ ղեկավարում էր տանկաշինությունը, զրահատանկային զորամասերի ստեղծումն ու նրանց կադրերի դաստիարակումը։ Ստալինի հանճարեղ միտքն ուղղություն էր տալիս սովետական տանկաշինարարների բանակին՝ կոնստրուկտորներին, ինժեներներին ու տեխնիկներին։



Ստալինը անձամբ զննում էր տանկերի փորձնական տիպերը, դիտողություններ ու առաջարկներ անում եղած թերությունները վերացնելու, մեքենաների մարտական հատկությունները կատարելագործելու ուղղությամբ, ոգեշնչում էր կոնստրուկտորներին, լարում նրանց ստեղծագործական միտքը։

Ընկեր Ստալինի զորավարական հանճարը ճիշտ էր կռահել տանկային զորքերի դերն ու նշանակությունը ժամանակակից պատերազմում։ Երկրորդ համաշխարհային պատերազմից դեռ բավական ժամանակ առաջ ընկեր Ստալինն ասաց, որ ապագա պատերազմը լինելու է մոտորների պատերազմ, և սովետական կոնստրուկտորների առջև խնդիր դրեց՝ Կարմիր Բանակը զինել աշխարհում լավագույն տանկերով։

Կատարելով ընկեր Ստալինի ցուցումը, մեր կոնստրուկտորներն ու տանկաշինարարները, Սովետական կառավարության և բոլշևիկյան պարտիայի անդուլ հոգատարության շնորհիվ, ժամանակակից տեխնիկայի նվաճումների հիման վրա, ստեղծեցին տանկերի լավագույն, առաջնակարգ տիպեր, որոնք իրենց մարտական հատկություններով՝ զրահի հաստությամբ, կրակային հզորությամբ և

մանևրականությամբ գերազանցում էին արտասահմանյան տիպերին, կատարելագործված էին այն աստիճան, որ ամբողջ պատերազմի ընթացքում չպահանջվեցին նրանց տակտիկական-մարտական հատկությունների լուրջ փոփոխություններ:

Դեռ նախքան Հայրենական պատերազմը ընկեր Ստալինի անմիջական ղեկավարությամբ և ցուցումով մեզ մոտ արդեն կազմակերպված էին տանկային զորամասեր, ստեղծված ու դաստիարակված էին տանկիստների հմուտ կադրեր, որոնց դարբնոցն էին հանդիսանում Զրահատանկային ու մեքենայացված զորքերի Ստալինի անվան Ռազմական ակադեմիան Մոսկվայում, ինչպես նաև բազմաթիվ այլ տանկային ռազմա-ուսումնական հաստատությունները և ուսումնարանները:

***

Հայրենական պատերազմի առաջին շրջանում, մեր երկրի վրա գերմանական ֆաշիստների ուխտադրուժ հարձակման հետևանքով, հակառակորդը ժամանակավոր հաջողություններ ունեցավ: Դրա պատճառներից



մեկն այն էր, որ մեր տանկային զորքերը թվական տեսակետից զիջում էին հակառակորդին, որը երկար ժամանակ պատրաստվելով պատերազմի, լրիվ մոբիլիզացրել էր ինչպես իրեն, այնպես էլ իր վասալների զինված ուժերն ու տեխնիկան և բացի դրանից, նրա տրամադրության տակ էր գտնվում ոչ միայն բուն Գերմանիայի, այլև Չեխոսլովակիայի, Բելգիայի, Ֆրանսիայի, Հոլանդիայի տանկային արդյունաբերությունը:

Մեր սրբազան Հայրենիքի սահմանները ներխուժած ֆաշիստական տանկային դիվիզիաների դեմ անհավասար մարտերում սովետական տանկիստները ցույց տվին հերոսության և անձնվիրության փայլուն օրինակներ: Նրանք մեր հետևակի և հրետանու հետ սերտ փոխգործողությամբ, ուժգին հակահարվածներ էին հասցնում հակառակորդի տանկային սեպերին: Պատերազմի միայն առաջին հինգ ամսում գերմանացիները կորցրին մոտ 15 հազար տանկ, որի զգալի մասը ոչնչացրին մեր քաջարի տանկիստները: Սովետական տանկիստներն անձնվիրաբար մարտնչում էին սիրելի Հայրենիքի պատվի և ազատության համար: Բայց այնուամենայն-

նով, տանկեր մենք այն ժամանակ ունեինք շատ ավելի քիչ, քան թե՛ հակառակորդը:

Ընկեր Ստալինը խնդիր դրեց՝ կարճ ժամանակում մի քանի անգամ ավելացնել մեզ մոտ տանկերի արտադրությունը և զրոյի հավասարեցնել հակառակորդի գերակշռությունը տանկերի ասպարեզում:

Տանկային արդյունաբերության բանվորները, ինժեներա-տեխնիկական աշխատողները, կոնստրուկտորները, ամբողջ սովետական ժողովուրդը առաջնորդի կոչին պատասխանեցին հերոսական աշխատանքով: Պատերազմի ժամանակվա դժվարին պայմաններում, երբ մեր արդյունաբերության հիմնական ճյուղերի մեծ մասը հակառակորդի սպառնալիքի տակ գտնվող շրջաններից փոխադրվում էր դեպի արևելք՝ երկրի խորքը, պարտիան ժողովրդին ոտքի հանեց այդ մարտական խնդիրը կատարելու համար: Սոցիալիստական արդյունաբերության աշխատողների, առաջին հերթին տանկաշինարարների հերոսական ջանքերով երկրի տանկային գործարանները նոր վայրերում սկսեցին արտադրել ավելի ու ավելի մեծ թվով ահեղ մեքենաներ՝ հզոր տանկեր, որոնք վճռական



դեր խաղացին սովետական ժողովրդի հաղթանակը կոփելու գործում:

Նոր տանկային զորամասերի կազմակերպումը դարձավ համաժողովրդական հոգատարության առարկա: Տամբովի և Սարատովի մարզերի կոլխոզնիկների նախաձեռնությամբ երկրում ծավալվեց հայրենասիրական շարժումը տանկային շարասյուների կառուցման համար միջոցներ հավաքելու ուղղությամբ: Կարճ ժամանակամիջոցում միայն Տամբովի կոլխոզնիկները տանկային շարասյան կառուցման ֆոնդը մուծեցին 40 միլիոն ռուբլի:

Հայրենական պատերազմի տարիներին մեր երկրի աշխատավորները տանկային շարասյուների կառուցման ֆոնդը մուծեցին մոտ 6 միլիարդ ռուբլի դրամ, ավելի քան 104 հազար ռուբլի՝ ոսկով և մոտ 193 կիլոգրամ զանազան ոսկեղեն: Իր խնայողությունների հաշվին բնակչության կատարած այդ նվիրաբերումներով կառուցվեցին մեծ քանակությամբ առաջնակարգ մարտական մեքենաներ:

Սովետական ժողովրդի ջերմ հայրենասիրության դրսևորման մի փայլուն արտահայտությունն էր Ուրալի աշխատավորների օրի-

նակը: Ուրալցիները կազմեցին կամավորական տանկային կորպուս, այն զինեցին սեփական արտադրության տանկերով ու զինամթերքով և ուղարկեցին ռազմաճակատ:

Միության մյուս մարզերից և ռեսպուբլիկաներից հետ չէին մնում նաև Հայաստանի աշխատավորները, որոնք տանկային շարասյուների կառուցման ֆոնդը մուծեցին մոտ 100 միլիոն ռուբլի: Այդ միջոցներով կառուցված «Սասունցի Դավիթ» տանկային շարասյունը գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ տարբեր ռազմաճակատներում մասնակցել է մի շարք խոշոր ճակատամարտերի, խորտակիչ հարվածներ հասցնելով ֆաշիստական բարբարոսներին:

Այս հերոսական ջանքերի շնորհիվ, պատերազմի վերջին երեք տարվա ընթացքում մեր տանկային արդյունաբերությունը ռազմաճակատին տալիս էր տարեկան ավելի քան 30 հազար տանկ, ինքնընթաց հրանոթ ու կրահամեքենա: Պատերազմի վերջին շրջանում տանկերի թիվը մեր բանակում արդեն աճել էր խաղաղ ժամանակվա համեմատությամբ 15 անգամ: Ստեղծված նոր տիպի «ԻՍ» գերհզոր տանկերը մահ էին սփռում գերմանա-ֆաշիստական զավթիչների վրա:



«Այժմ Կարմիր Բանակը տանկեր, հրանոթներ, ինքնաթիռներ ունի ոչ թե պակաս, այլ ավելի՛ շատ, քան գերմանական բանակը»,— ասաց ընկեր Ստալինը 1944 թվականին, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 27-րդ տարեդարձի առթիվ իր զեկուցման մեջ: Ընկեր Ստալինի առաջադրած խնդիրը փայլուն կերպով կատարված էր:

***

Գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ սովետական ժողովրդի մղած Հայրենական պատերազմում առաջին մեծ ճակատամարտը, տանկային խոշոր միավորումների մասնակցությամբ, Ստալինգրադի պատմական ճակատամարտն էր: Այստեղ սովետական տանկիստները ցույց տվին հակառակորդի շրջապատման նպատակով կատարված մանևրի փայլուն օրինակ: Ստալինգրադի ճակատամարտը ցույց տվեց սովետական հրետանու և տանկերի քանակական ու որակական գերազանցությունը հակառակորդի նկատմամբ մի բան, որ այնուհետև պահպանվեց մինչև պատերազմի վերջը: Ստալինգրադի ճակատամարտը շրջադարձային կետ հանդիսացավ

երկրորդ համաշխարհային պատերազմի պատմության ընթացքի մեջ։ Դրանից հետո գերմանացիներն այլևս չկարողացան ուշքի գալ։ Մեր զորքերը խլեցին հակառակորդից նախաձեռնությունը, որն այլևս երբեք չզիջեցին նրան։

Զրահատանկային և մեխանիզացված զորամասերը բացառիկ դեր խաղացին 1943 թվականի ամառը Կուրսկի աղեղում մղված կատաղի ճակատամարտում, որտեղ մարտի դաշտում տանկային տիրապետության համար մղվող պայքարը վերջնականապես լուծվեց մեր օգտին։

Կուրսկի աղեղում գերմանացիները կենտրոնացրել էին իրենց համարյա բոլոր տանկային զորամասերը, վերազինելով դրանք նորագույն տիպի, այդ թվում «Տիգր» տիպի ծանր տանկերով։ Հակառակորդի ստեղծած տանկային բռունցքին հակադրվեց ստալինյան իմաստուն կանխատեսությամբ ստեղծված, խոր էշելոնացված հակատանկային պաշտպանությունը։ Կուրսկի ճակատամարտը, որին յուրաքանչյուր կողմից մասնակցում էին մոտ 5 հազար տանկ, վերջացավ գերմանական զրահատանկային խմբավորման ջախջախումով։ Հակառակորդն սկսեց



նահանջել, նրա համար կատաստրոֆիկ դրություն ստեղծվեց։ Հետագա չորս ամիսների ընթացքում ջախջախվեցին գերմանական բանակի խոշորագույն ուժերը, խորտակվեցին կորցրած ստրատեգիական նախաձեռնությունը վերականգնելու ուղղությամբ գերմանական հրամանատարության պլանները։

1944 թվականի ընթացքում Կարմիր Բանակը տարբեր ռազմաճակատներում հակառակորդին հասցրեց տասը հաջորդական հարվածներ։ Այդ հարվածների իրականացման գործում հատկապես կարևոր դեր խաղացին տանկային խոշոր միավորումները, որոնց տեսակարար կշիռը սովետական զորքերի մարտական գործողությունների մեջ գնալով աճում էր։

Բելոռուսիայի ազատագրության համար մղված մարտերում տանկային զորամասերը, հակառակորդի պաշտպանությունը ճեղքելուց հետո, մարտերով առաջ էին շարժվում օրական միջին հաշվով 40 կիլոմետր, կտրելով հակառակորդի նահանջի ուղիները, շրջապատելով և ջախջախելով նրա կենդանի ուժն ու տեխնիկան։ Հետագա մարտերում սովետական տանկիստները գործում էին է՛լ ավելի սրընթաց։

Սովետական տանկիստներն իրենց նոր փառքով պսակեցին Բեռլինի համար մղված մարտերում։ Բեռլինի վրա կատարված գրոհին մասնակցում էին ավելի քան չորս հազար տանկ, որոնք օր ու գիշեր, զորքի մյուս տեսակների փոխգործողությամբ ավերում էին հակառակորդի ուժեղ պաշտպանությունը, արյունաքամ անում նրան։ Բեռլինի անկումից հետո սովետական տանկերը, մեծ զորավար Ստալինի կամքով, նետվեցին ոչնչացնելու թշնամու վերջին խմբավորումը, որը ճգնում էր ամրանալ Չեխոսլովակիայում և դրանով իսկ ձգձգել պատերազմի ավարտումը։ Կրկին անգամ մեր տանկիստները ցույց տվին իրենց հմտությունն ու խիզախությունը։ Զտեսնված կարճ ժամանակամիջոցում նրանք սրընթաց մանևրով անցան Դրեզդենը և մտան Չեխոսլովակիայի մայրաքաղաքը՝ Պրագա, այդտեղ ավարտելով պատերազմը Եվրոպայում։ Պատմությունը երբեք չի մոռանա Սովետական Բանակի ազատագրական միսսիայի այդ վերջին գործողությունը— մեր տանկիստների լեգենդար արշավը դեպի Պրագա, որտեղ նրանք օգնության հասան գերմանական օկուպացիայի



դեմ բռնկած ժողովրդական ապստամբությանը։

Հեռավոր Արևելքում ճապոնական իմպերիալիզմի դեմ մեր բանակի կարճատև, բայց վճռական գոտեմարտում սովետական տանկիստները, գործելով Մանջուրիայի լեռնա-անտառային տեղանքի ծանր պայմաններում, մոնղոլական ջրազուրկ ու կիզիչ ավազուտներում, սրընթաց և հմուտ մանևրով մասնատեցին հակառակորդի ուժերը, պատմության մեջ չտեսնված անցում կատարեցին Մեծ Խինգանի լեռներով և ջախջախիչ հարված հասցրին Կվանտունյան բանակին, դուրս գալով Պորտ-Արտուրի շրջանը։

***

Սովետական ժողովուրդը լավ գիտե և երբեք չի մոռանա այն աչքի ընկնող դերը, որ մեր զրահատանկային ու մեխանիզացված զորամասերը կատարեցին ֆաշիստական Գերմանիայի և իմպերիալիստական Ճապոնիայի ջախջախման գործում։ Նա երբեք չի մոռանա սովետական տանկիստների անօրինակ արիությունն ու հերոսությունը։ Ջախջախելով ու ոչնչացնելով հակառակորդին, սովետական տանկիստներն ազատագրու-

թյուն էին բերում մեր սովետական մարդկանց ու Եվրոպայի ժողովուրդներին, որոնք ժամանակավորապես ընկել էին գերմանական ստրկության ծանր լծի տակ։

Հայրենական պատերազմում սովետական տանկիստների մատուցած ծառայությունները բարձր գնահատվեցին Սովետական կառավարության կողմից։ Ավելի քան 250 հազար տանկիստներ պարգևատրված են զանազան շքանշաններով, 1120 տանկիստների կուրծքը Հայրենիքը զարդարել է Սովետական Միության Հերոսի փայլուն նշանով— Ոսկե Աստղով։

Բարձր է գնահատված նաև սովետական տանկաշինարարների անձնվեր աշխատանքը Հայրենական պատերազմի ընթացքում։ Տանկային արդյունաբերության ավելի քան 9 հազար աշխատողներ պարգևատրված են ՍՍՌ Միության շքանշաններով ու մեդալներով։

Մեծ են ընկ. Վ. Մ. Մոլոտովի ծառայությունները՝ պատերազմի ժամանակվա ծանր պայմաններում տանկային արդյունաբերությունը կազմակերպելու գործում։ Նա օր-ավուր ղեկավարում էր տանկաշինությունը։ Այդ բնագավառում կատարած աչքի ընկնող



աշխատանքի համար ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը ընկեր Մոլոտովին շնորհեց Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում։ Այդ բարձր կոչմանն են արժանացել նաև սովետական տանկերի մի շարք տաղանդավոր կոնստրուկտորներ, որոնցով իրավամբ հպարտանում է սովետական ժողովուրդը։

***

Սովետական տանկիստների փառապանծ ընտանիքում իրենց պատվավոր տեղն ունեն նաև հայ քաջորդիները։ Նրանցից հարյուրավորները պարգևատրված են կառավարական բարձր պարգևներով, շատերը Սովետական Միության Հերոսի պատվավոր կոչումով։ Սովետական Միության մյուս եղբայրական ժողովուրդների հետ ուս-ուսի տված՝ նրանք մարտնչել են Մոսկվայի մատույցներում, Ստալինգրադում, Ղրիմում ու Կովկասի նախալեռներում և այլ ռազմաճակատներում։ Նրանք պաշտպանում էին Լենինգրադը, հարձակվում Քյոնիգսբերգի վրա, նրանք մասնակցեցին ֆաշիստական գազանի ջախջախմանը, նրա որջում՝ Բեռլինում։

Հայ ժողովուրդն իր փառապանծ պատմու-

թյան մեջ և իր սրտում միշտ վառ կպահի իր հարազատ զավակների՝ տանկային զորքերի գեներալ-մայոր, Սովետական Միության Հերոս Հ. Բաբաջանյանի, Սովետական Միության Հերոսներ՝ գվարդիայի մայոր Ա. Ղազարյանի, ավագ լեյտենանտ Ասրյանի, գըվարդիայի ավագ սերժանտ Դարբինյանի, գնդապետ Ն. Բալոյանի և շատ ուրիշների անունները։

***

Տանկիստների օրն այս տարի սովետական ժողովուրդը նշում է խաղաղ շինարարական աշխատանքի պայմաններում։ Սոցիալիզմի երկրի աշխատավորները միահամուռ կերպով պայքարում են ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման հետպատերազմյան հնգամյա պլանը կենսագործելու համար։ Գործարաններում, հանքահորերում, կոլխոզային դաշտերում ծավալված նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության լայն թափը Ստալինյան նոր հնգամյակի երկրորդ տարվա պլանները ժամկետից շուտ կատարելու և գերակատարելու, առաջնորդին տված խոստումն անթերի



կենսագործելու համար, այդ պայքարի հաջողության լավագույն գրավականն է։

Սովետական մարդիկ անսահման ոգևորությամբ իրենց բոլոր ուժերն ու եռանդը նվիրում են պատերազմի հետևանքներն ամենաարագ կերպով վերացնելու, սրբազան Հայրենիքի տնտեսական հզորությունն ու պաշտպանունակությունն էլ ավելի ամրապընդելու գործին։ Նրանք միահամուռ կերպով հավանություն են տալիս իրենց հարազատ կառավարության քաղաքականությանը, որը խաղաղության և անվտանգության, իրավահավասարության և ժողովուրդների սերտ բարեկամության քաղաքականություն է։

Բայց ծավալելով խաղաղ ստեղծագործական աշխատանքը, ասում է ընկեր Ստալինը, «ոչ մի րոպե չպետք է մոռանալ միջազգային ռեակցիայի ոտնձգությունների մասին, որը սնուցում է նոր պատերազմի պլանները։ Անհրաժեշտ է հիշել մեծ Լենինի այն ցուցումները, թե անցնելով խաղաղ աշխատանքի, պետք է մշտապես լինել զգաստ, աշ-

քի լույսի պես պահպանել մեր երկրի զինված ուժերն ու նրա պաշտպանունակությունը»:

Սովետական ժողովուրդը վստահ է իր ապագայի նկատմամբ: Նա գիտե, որ Սոցիալիզմի Երկրի զինված ուժերը արթուն պահպանում են նվաճված խաղաղությունը և մեր երկրի աշխատավորների խաղաղ ստեղծագործական աշխատանքը, որ նրանք այսուհետև էլ կլինեն մեր փառապանծ ու սիրելի Հայրենիքի պատվի և ազատության հուսալի պաշտպանը:

---*---



# ԱՊԱԳԱ ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ ԿԱՐԵՎՈՐ ՆԱԽԱՊԱՅՄԱՆԸ

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումը «Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին» իր պատմական որոշման մեջ նշեց. «Ցանքատարածությունների ընդլայնելու հետ միասին հիմնական խնդիր համարել հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացումը, որի համար անհրաժեշտ է լիովին ապահովել աշնանացան ցորենի, իսկ արևելյան շրջաններում՝ գարնանացան ցորենի համար ցելերի ժամանակին հերկումը և մշակումը, գարնանացան կուլտուրաների ցանքը կատարել ցրտահերկի վրա... ապահովել բերքատվության զգալի բարձրացումը և համախառն բերքի ավելացումը աշնանացան ցորեն մշակող շրջաններում»:

Սովետական Հայաստանում աշնանացան ցորենը մեծ տարածություն է գրավում և վճռական դեր է խաղում հացահատիկի արտադրությունն ավելացնելու գործում։ Պատերազմի տարիներին աշնանացան ցորենի տեսակարար կշիռն է՛լ ավելի աճեց։ Սովետական իշխանության առաջին տարիներին աշնանացան ցորենը ցանվում էր Ռեսպուբլիկայի ցածրադիր շրջաններում և միայն որոշ լեռնային շրջաններում, որտեղ աշնանացանի համար պայմանները համեմատաբար բարենպաստ են։ Ներկայումս, բարձր ագրոտեխնիկայի կիրառման և ցորենի ավելի ցրտակայուն սորտերի արմատավորման շնորհիվ, աշնանացան ցորենը առաջատար տեղ է գրավում հացահատիկային կուլտուրաների մեջ Հայաստանի համարյա բոլոր շրջաններում։

Աշնանացան ցորենի բերքատվությունն զգալիորեն ավելի բարձր է գարնանացան ցորենից, գարնանացան գարուց և այլ հասկավոր կուլտուրաներից։ Աշնանացան ցորենի արմատավորումը հասցրեց ոչ միայն բարձր, այլև ավելի կայուն բերքի։ Լեռնային շրջանների շատ կոլխոզներ ներկայումս մեծ հաջողություններ են ձեռք բերել բարձր և կայուն բերք ստանալու գործում։ Այսպես



օրինակ՝ Թալինի, Էջմիածնի և այլ շրջաններում հեկտարից 20-25 ցենտներ բերք ստանում են ոչ միայն առանձին օղակներ, այլև ամբողջ բրիգադաներ ու կոլխոզներ։

Աշնանացան ցորենի սելեկցիոն և տեղական բարելավված սորտերն արդեն մշակվում են Ռեսպուբլիկայի լեռնային շրջանների ամենաբարձր վայրերում, որտեղ աշնանացան ցորենի կուլտուրայի մասին առաջ մտածել անգամ չէին կարող։

Բազմաթիվ կոլխոզների փորձը ցույց է տվել, որ բարձր ագրոտեխնիկայի կիրառման դեպքում աշնանացան ցորենը, նույնիսկ ամենաանբարենպաստ տարիներին տալիս է ավելի մեծ բերք, քան մյուս հասկավոր կուլտուրաները։ Սակայն աշնանացանի առավելությունները լիակատար կերպով դրսևորվում են միայն այն դեպքում, եթե կիրառվում է բարձր ագրոտեխնիկայի ամբողջ կոմպլեքսը և ցանվում են տեղական պայմաններին ավելի հարմարված սորտեր։

Աշնանացան ցորենի բարձր բերքատվությունն ապահովելու տեսակետից չափազանց կարևոր նշանակություն ունի ցանքի ժամանակի ճիշտ ընտրությունը։ Դա հատկապես

կարևոր է այժմ, երբ մեր առջև խնդիր է դըրված՝ ամեն կերպ բարձրացնել հացահատիկային ու գյուղատնտեսական այլ կուլտուրաների բերքատվությունը, ավելացնել նրանց համախառն բերքը։ Ցանքի ճիշտ ժամկետների կիրառումը, ագրոտեխնիկական մյուս ձեռնարկումներ հետ միասին նպաստում է ոչ միայն բարձր բերք ստանալուն, այլև ծախսված աշխատանքի ավելի բարձր վարձատրմանը։

Աշնանացանի ժամկետները սահմանելիս յուրաքանչյուր շրջանում անհրաժեշտ է հաշվի առնել տվյալ շրջանի կլիմայական պայմանները, ցանվող սորտի, ինչպես նաև հողի առանձնահատկությունները։ Ցանքի ժամկետը պետք է ընտրել այնպես, որ աշնանացանը կարողանա մինչև ձմռան ցրտերի վրա հասնելը փնջավորվել, զարգացնել արմատները և կուտակել սննդանյութի անհրաժեշտ պաշար։ Այդ դեպքում աշնանացան բույսերը գարնանը կկարողանան վաղ սկսել աճը, ավելի լավ օգտագործելով հողի մեջ կուտակված խոնավությունն ու սննդանյութերը։ Աշնանացանի ցողուն գցելը, հասկակալումը, հասունացումը և բերքահավաքը նույնպես



այդ դեպքում կկատարվի ավելի վաղ ժամկետներում, որը Հայաստանի շատ շրջանների համար վճռական նշանակություն ունի բարձր և կայուն բերքն ապահովելու տեսակետից։

Աշնանացանի ինչպես ուշ, այնպես էլ չափից դուրս վաղ ժամկետները վնասակար ազդեցություն են գործում բերքատվության վրա։ Ցանքը ժամանակից շատ կատարելու դեպքում աշնանացանն աճում է չափից ավելի, անցնում է յարովիզացիայի փուլը և այդ պատճառով էլ ձմռան ընթացքում փչանում է։ Ուշ կատարելու դեպքում աշնանացանը չի կարողանում մինչև ցրտերը սկսվելը բավականին աճել և ձյան տակ է անցնում բավականաչափ չամրացած։ Իսկ թույլ զարգացած, վատ փնջավորված բույսերը ավելի մեծ չափով են ենթակա ցրտահարության և այլ անբարենպաստ պայմաններին, նոսր են աճում և խիստ մոլախոտակալում են, որի հետևանքով բերքատվությունն էլ, նորմալ ժամկետներում կատարված ցանքերի համեմատությամբ, նվազում է կիսով չափ և նույնիսկ ավելի։

Ցանքի ժամկետների այսպիսի ընտրու

թյունը, իհարկե, իր դրական արդյունքը կտա, եթե միևնույն ժամանակ պահպանվում են ագրոտեխնիկական նաև մյուս կանոնները՝ հողի ճիշտ մշակումը, պարարտացումը, սերմացուի զտումը, սորտերի ճիշտ ընտրությունը և այլն: Ջրային շրջանների համար հատկապես կարևոր նշանակություն ունի նաև վաղահաս ու չորակայուն սորտերի ընտրությունը:

Ինչ վերաբերում է աշնանացանի տևողությանը, ապա Ռեսպուբլիկայի շրջանների մեծ մասում դա պետք է չանցնի 20-30 օրից, իսկ լեռնային շրջաններում պետք է ավելի կարճ լինի, որովհետև այնտեղ ցրտերն ավելի շուտ են սկսվում:

Աշնանացանի բարձր բերքատվությունն ապահովող մյուս կարևոր պայմանը ցանքի եղանակն է: Ռեսպուբլիկայի առաջավոր կոլխոզները աշնանացանի ժամանակ լրիվին օգտագործում են շարքացանները: Այս դեպքում սերմացուն համաչափորեն է բաշխվում ցանքադաշտում, որի շնորհիվ բույսերն ավելի ճիշտ են ապահովվում սնունդով, ազատ են աճում, քան սովորական ցանքի ժամանակ: Հարկավոր է շարքացանների համար



սահմանել սեզոնային և օրական առաջադրանքներ: Յուրաքանչյուր կոլխոզ պետք է խստորեն կատարի աշնանացանի գրաֆիկը:

Ցանքից առաջ ամբողջ սերմացուն պետք է զտել և ախտահանել, ստուգել լաբորատորիայում:

Աշնանացանը պետք է կատարվի խնամքով, բարձրորակ, ագրոտեխնիկական պայմաններին լրիվին համապատասխան: Պետք է յուրաքանչյուր կոլխոզնիկի, ՄՏ կայանի և սովխոզի յուրաքանչյուր աշխատողի գիտակցությանը հասցնել այն, որ կազմակերպված ու լավորակ կատարել աշնանացանը—նշանակում է ամուր հիմք դնել եկող տարվա բարձր բերքի համար, է՛լ ավելի ամրապնդել մեր Հայրենիքի տնտեսական հզորությունը:

***

Ապագա բարձր բերքի կարևոր նախապայմանն է նաև ցրտահերկը, որ կատարվում է աշնանը: Գոյություն ունի գարնանացանի համար հողը նախապատրաստելու երկու ձև: Առաջինը այն է, երբ հողի մշակությունը կատարվում է նախորդ աշնանից և երկրորդը, երբ այդ մշակությունը կատարվում է նույն գար-

նանը՝ ցանքի նախօրյակին։ Այս երկու ձևերից առաջինը՝ այսինքն աշնանավարը շատ ավելի արժեքավոր է։ Հողը աշնանից մշակելն ունի և՛ կազմակերպչական, և՛ ագրոտեխնիկական մեծ առավելություններ։

Աշնան մշակությունն այն նշանակությունն ունի, որ աշնանից հերկված հողի ստրուկտուրան ձմռան եղանակների և այլ պայմանների ազդեցությամբ լավանում է, ձյունը լավ է կուտակվում հողի երեսին, որի հետևանքով հողի խոնավությունն էլ ավելանում է, մոլախոտերի, հիվանդությունների և վնասատուների դեմ ավելի հաջողությամբ է պայքար մղվում։ Այս բոլորի արդյունքն այն է լինում, որ գարնանացանը բարձր բերք է տալիս։

Գարնանացան կուլտուրաները շատ քիչ դեպքերում են հետևում ցելին. նրանք ընդհանրապես ցանվում են գարնանացան և աշնանացան հացաբույսերից, կտավատից, ընդեղեններից, շարքահերկ կուլտուրաներից և բազմամյա խոտաբույսերից հետո։

Հացաբույսերի, կտավատի, ընդեղենների և այլ կուլտուրաների բերքահավաքից հետո հողամասը, որը «խոզանատեղ» է կոչվում, բավական չորացած, պնդացած և մոլախո-



տերով վարակված է լինում։ Այդ հողերի վարը կարող է կատարվել կամ գարնանը, կամ աշնանը։ Աշնան վարն էլ կարող երկու ձևով կատարվել—կամ բերքահավաքից անմիջապես հետո, կամ ուշ աշնանը։

Ընդհանրապես շուտ վարելն ավելի օգտակար է, որովհետև այդ դեպքում հողն ավելի երկար ժամանակ է մնում հերկված դրությամբ և բույսերի մնացորդների քայքայման համար ավելի երկար ժամանակ է լինում, հողի մեջ ավելի ուժեղ են կատարվում միկրոբիոլոգիական, քիմիական, հողմնահարման պրոցեսները, որի հետևանքով հողում ավելի շատ սննդանյութ է կուտակվում։

Վարն անմիջապես բերքահավաքից հետո կատարելն ունի մի շարք առավելություններ ևս։ Նախ՝ այդ ժամանակ հողը գտնվում է «շվաքի հասունության» մեջ և այդ պատճառով էլ վարն ավելի հեշտությամբ ու լավ է կատարվում, ստացվում է համեմատաբար ավելի փուխր վար, իսկ հետագայում խոնավության կուտակման համար ավելի նպաստավոր պայմաններ են ստեղծվում։ Այդպիսի վարից հետո աշնան անձրևները մեծ մասամբ ծծվում են հողի մեջ և խոնավության պաշար է ստեղծվում։

Ուշ աշնանը վարելու դեպքում հողում կուտակվում են միայն ուշ աշնան տեղումները, իսկ եթե հողամասը վարում են գարնանը, ապա հողը զրկվում է հիշյալ առավելություններից։ Գարնանը վարած հողամասը լրիվ չի օգտագործում նաև ձմեռվա ձյան ջրերը, որովհետև ձյունը հալչելու ժամանակ հողամասը չվարած և պնդացած լինելու պատճառով ջուրը չի կարողանում ամբողջովին ծծվել և կուտակվել։

Սննդանյութերի կուտակման տեսակետից ևս աշնան վարը, հատկապես վաղ աշնան վարը, մեծ առավելություններ ունի։

Աշնան վարը շատ խոշոր նշանակություն ունի հատկապես մոլախոտերի, հիվանդությունների և վնասատուների դեմ պայքարելու տեսակետից։ Խոզանատեղը համարյա միշտ էլ ուժեղ կերպով վարակված է լինում մոլախոտերով, միջատների ձվերով, թրթուրներով և հիվանդություններով։ Շատ մոլախոտեր, որոնք ցանքերի մեջ են լինում և չեն կարողանում զարգանալ, բերքահավաքից հետո սկսում են ուժեղ կերպով զարգանալ ու բազմանալ։ Լինում են նաև բազմաթիվ մոլախոտերի սերմեր, որոնք մեծ մասամբ ծլ-



ում են հաջորդ գարնանը և ուժեղ կերպով վարակում գարնանացանը։

Գարնանավարով հնարավոր չէ լավ պայքարել մոլախոտերի դեմ։ Բազմաթիվ մոլախոտերի ու նրանց մնացորդների դեմ ամենից լավ կարելի է պայքարել աշնան հերկով։ Եթե խոզանն ուժեղ կերպով վարակված է մոլախոտերի սերմերով, ապա այդ սերմերն ոչնչացնելու համար պետք է ամառվա վերջին կամ վաղ աշնանը երեսվար (խոզանի երեսվար) կատարել, իսկ հետո՝ ուշ աշնանը՝ խոր վար։ Եթե առաջին վարը միանգամից խոր կատարենք, ապա մոլախոտերի սերմերը կընկնեն խոր շերտերի մեջ, այնտեղ կմնան և մյուս տարի վարելիս վեր բարձրանալով կծլեն ու կվարակեն ցանքը։ Մինչդեռ երեսվար կատարելու դեպքում դրանք ընկնում են նպաստավոր պայմանների մեջ, նրանց զգալի մասը ծլում է, որոնք հաջորդ խոր ցրտավարի միջոցով ոչնչացվում են։ Իհարկե, տարբեր շրջաններում և տարբեր հողերում այս կոմբինացիաները պետք է լինեն տարբեր և պետք է բխեն կոնկրետ պայմաններից։

Աշնանից վարած հողամասը, երբ էլ որ լինի, պետք է գարնանը, որքան հնարավոր է,

շուտ փոցխել, որպեսզի խոնավության մեծ կորուստ տեղի չունենա: Փորձերը ցույց են տալիս, որ աշնան վարը հետագա գարնան կրկնավարի հետ միասին անհամեմատ ավելի բարձր բերք է տալիս, քան միայն աշնան վարը:

Շարքահերկ կուլտուրաներից ազատված հողամասը տարբերվում է հացահատիկային կուլտուրաներից ազատված հողամասերից: Այդ պատճառով էլ նրա մշակությունը տարբեր է, որովհետև շարքահերկ կուլտուրաների միջշարքային տարածությունները ամբողջ ամառը մշակման են ենթարկվում, ուստի այդ հողամասը բավական փուխր ու մոլախոտերից ազատ է լինում:

Եթե այդ հողամասերում ցանված է եղել արմատապտուղ կամ պալարապտուղ (ճակնդեղ, կարտոֆիլ և այլն), ապա բերքահավաքից հետո անմիջապես հողամասը պետք է խոր վարել ու այդպես թողնել, իսկ վաղ գարնանը՝ փոցխել:

Այն հողերը, որոնք աշնանից վարած լինելով, մինչև գարուն նստում և պնդանում են, պետք է գարնանը կրկնավար կատարել: Հետագա մշակությունն արդեն կախված է այն



բանից, թե ինչ գարնանացան կուլտուրա է ցանվելու:

Այլ է ճմահողերի մշակությունը: Ճմահող ասելով հասկացվում է այնպիսի հողամաս, որն ամբողջովին ծածկված է բազմամյա բույսերի ճիմով: Ճմուտը կարող է լինել բնական (խամ և խոպան), և արհեստական, որտեղ ցանված են բազմամյա խոտաբույսեր՝ առվույտ, երեքնուկ, կորնգան, տիմոֆեյեվկա և այլն:

Ճմուտի մշակությունը նախ և առաջ պետք է նպատակ ունենա պահպանել եղած ստրուկտուրան, մեռցնել այնտեղ աճող բազմամյա բուսականությունը և այդ բուսականության մնացորդների քայքայման բարենպաստ պայմաններ ստեղծել:

Ճմուտի մշակման ամենալավ ձևը կուլտուրական վարն է: Այդ դեպքում հողը պետք է վարել այսպես կոչված նախագութանիկ ունեցող կուլտուրական գութանով: Կուլտուրական գութանն իրենից ներկայացնում է մի գլանաձև թև ունեցող գութան, որի դանակի առջևից ամրացվում է մի փոքրիկ նախագութանիկ:

Կուլտուրական գութանի վարի նորմալ խորությունը մոտ 25 սանտիմետր է։ Նախագութանիկը վարում է 10 սանտիմետր խորությամբ, իսկ հիմնական գութանը վերցնում է ևս 15 սանտիմետր։ Ավելի երես վարելու դեպքում գլխավոր գութանի վերցրած հողը բավարար չի լինում նախագութանիկի կտրած ճիմը ծածկելու համար։ Նրա մի մասը դուրս է մնում և որոշ ժամանակից հետո կարող է նորից կանաչել։

Կուլտուրական վարը պետք է համարել մշակման մյուս բոլոր ձևերից ամենալավը, որովհետև ճմուտի մշակման բոլոր ձևերն այստեղ ամենից լավ են իրագործվում, բուսականությունը մեռնում է, ճիմն այնպիսի պայմանների մեջ է ընկնում, որ հողի ըստրուկտուրան քիչ է քայքայվում՝ քիչ է փոշիանում։ Այդ աշխատանքը պետք է կատարել ուշ աշնանը, սակայն այնպես, որ չհամընկնի սառնամանիքների հետ։

Ժամանակին ու բարձրորակ կատարված աշնանացանը և ցրտահերկը ապագա բարձր բերքի հուսալի երաշխիքն են, նրա կարևոր նախապայմանը, որոնք կապահովեն առատ բերքը Ստալինյան նոր հնգամյակի երրորդ տարում, մթերքների առատություն ստեղծելով մեր երկրի բնակչության համար։

Պրոֆ. դոկտոր՝ Գ. ԱՂԱՋԱՆՅԱՆ

*ԶՐՈՒՅՑՆԵՐ ՍՏԱԼԻՆՅԱՆ ՀՆԳԱՄՅԱԿԻ ՄԱՍԻՆ*

---

## ՏՈՒՐԲԻՆՆԵՐ ԳՅՈՒՂԱԿԱՆ ԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման հնգամյա պլանը նախատեսում է հնգամյակի ընթացքում Երևանում կառուցել և գործարկել փոքր հիդրոտուրբինների գործարանը, տարեկան 300 տուրբինի արտադրությամբ։

Փոքր հիդրոտուրբինները նախատեսված են սովխոզների, խոշոր կոլխոզների համար, գյուղերի լուսավորության, ընդհանրապես սոցիալիստական գյուղատնտեսությանը սպասարկելու համար։

Երևանի Փոքր հիդրոտուրբինների գործարանն արտադրելու է «ՑՏ—1½» տիպի տուրբիններ, մինչև 106 ձիու ուժի կարողությամբ, որոնք աշխատելու են փոքր գետերի վրա։ Սովետական Միության մեջ նման տիպի տուրբիններ արտադրվելու են առաջին անգամ մեզ մոտ՝ Երևանում։

Գործարանի շինարարությունն սկսվել է անցյալ տարվանից և այժմ արդեն պատրաստ է առաջին մեխանիկական ցեխի շենքը: Ստացվել են որոշ մեքենաներ, դազգահներ որոնց մոնտաժային աշխատանքներն են կատարվում:

Կառուցվում է և մինչև այս տարվա վերջը պատրաստ կլինի մեխանիկական ցեխի երկրորդ կորպուսը, ուր դրվելու են ավելի ծանր մեքենաներ և դազգահներ:

Մոնտաժնիկների մեջ կան հայրենադարձ հայեր, որոնք շնորհալի աշխատողներ են: Գործարանի գլխավոր ինժեներ Ս. Ներսիսյանը հատուկ գովեստով է խոսում հայրենադարձներ Ն. Շիրակչյանի և Հ. Դեղեյանի մասին:

Կառուցվում և կարգավորվում է գործիքային ցեխը, պատրաստ է նաև ենթակայանի շենքը և արդեն մոնտաժ է արվում:

Դրված է գործարանի ձուլարանի հիմքը, նոյեմբերին կավարտվի գործարանի վարչության գեղեցիկ, վարդագույն տուֆից կառուցված շենքը:

Այս տարվանից մասնակիորեն աշխատելու է գործարանը, հատկապես նրա մեխանիկական ցեխը, որը հավաքելու է տուրբիններ:



Ստալինյան նոր հնգամյակի նորակառույց Երևանի Փոքր հիդրոտուրբինների գործարանի գործարկումը խոշոր նշանակություն կունենա Սովետական Հայաստանի գյուղատնտեսության զարգացման համար: Գործարանը կապահովի նաև Անդրկովկասի եղբայրական ռեսպուբլիկաներում կառուցվող գյուղական հիդրոէլեկտրակայանների պահանջը:

Գյուղական հիդրոկայանների գործարկումով հնարավորություն կստեղծվի էլ ավելի մեքենայացնել կոլխոզային գյուղատնտեսության մեջ աշխատանքի հիմնական պրոցեսները, որոնք կկատարվեն էլեկտրականության ուժով, կթեթևանա կոլխոզնիկների աշխատանքը:

Հետագայում Փոքր հիդրոտուրբինների գործարանը արտադրելու է 150 կիլովատտանոց «Սպիրալ» տուրբիններ, որոնք ջրի թույլ ճնշման պայմաններում մեծ էներգիա կարող են տալ:

Գործարանի կառուցողները լայն ծավալելով սոցիալիստական մրցությունը, աշխատում են Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռեվոլյուցիայի 30-րդ տարեդարձը դիմավորել տարեկան պլանները կատարած:

Գործարանը լրիվ կարողությամբ կաշխատի հնգամյակի վերջում՝ 1950 թվականին:

*

Պատ. խմբագրի տեղակալ՝
Կ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

ՎՖ 03102 պատվեր 1172, տիրաժ 9600
Ստորագրված է տպագրության 11/IX 1947 թ.
Պոլիգրաֆ և Հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б)
Армении
Блокнот Агитатора